Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 4 ՓԵՏՐՎԱՐ 1951

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս՝ 2—52—78։

---

# ԸՆԿ. Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ԶՐՈՒՅՑԸ „ՊՐԱՎԴԱ"-Ի ԹՂԹԱԿՑԻ ՀԵՏ

Վերջերս «Պրավդա»-ի թղթակիցը դիմել էր ընկեր Ստալինին արտաքին քաղաքական բնույթի մի շարք հարցերով: Ստորև տպագրվում է ընկ. Ի. Վ. Ստալինի պատասխանը:

ՀԱՐՑ: Դուք ինչպե՞ս եք գնահատում համայնքների պալատում անգլիական պրեմյեր Էտլիի վերջին հայտարարությունն այն մասին, թե պատերազմն ավարտվելուց հետո Սովետական Միությունը չի զինաթափվել, այսինքն չի զորացրել իր զորքերը, թե այդ ժամանակվանից ի վեր Սովետական Միությունը զենքով ավելի է մեծացնում իր զինված ուժերը:

ՊԱՏԱՍԽԱՆ: Պրեմյեր Էտլիի այդ հայտա-



րարությունը ես գնահատում եմ որպես զըր-պարտություն Սովետական Միության նկատմամբ:

Ամբողջ աշխարհին հայտնի է, որ Սովետական Միությունը պատերազմից հետո զորացրեց իր զորքերը: Ինչպես հայտնի է, զորացրումն անցկացվեց երեք հերթով, առաջին և երկրորդ հերթերը՝ 1945 թվականի ընթացքում, իսկ երրորդ հերթը՝ 1946 թվականի մայիսից մինչև սեպտեմբեր: Բացի դրանից, 1946 և 1947 թվականներին անցկացվեց Սովետական Բանակի անձնակազմի ավագ հասակների զորացրում, իսկ 1948 թվականի սկզբին զորացրվեցին բոլոր մնացած ավագ հասակները:

Սրանք են բոլորին հայտնի փաստերը:

Եթե պրեմյեր Էտլին ուժեղ լիներ ֆինանսական կամ տնտեսական գիտության մեջ, նա առանց դժվարության կհասկանար, որ ոչ մի պետություն, այդ թվում և Սովետական պետությունը, չի կարող ամբողջ թափով ծա-



վալել քաղաքացիական արդյունաբերությունը, սկսել Վոլգայի, Դնեպրի, Ամու-Դարիայի հիդրոկայանների նման մեծ կառուցումներ, որոնք պահանջում են տասնյակ միլիարդների բյուջետային ծախսեր, շարունակել մասսայական սպառման ապրանքների գների սիստեմատիկ իջեցման քաղաքականությունը, որը նույնպես պահանջում է տասնյակ միլիարդների բյուջետային ծախսեր, հարյուրավոր միլիարդներ ներդնել գերմանական օկուպանտների կողմից ավերված ժողովրդական տնտեսության վերականգնման գործում, և դրա հետ միասին, դրա հետ միաժամանակ, բազմապատկել իր զինված ուժերը, ծավալել ռազմական արդյունաբերությունը:

Դժվար չէ հասկանալ, որ այդպիսի խելացնոր քաղաքականությունը կհանգեցներ պետության սնանկացմանը: Պրեմյեր Էտլին սեփական փորձով, ինչպես նաև ԱՄՆ-ի փորձով, պետք է իմանար, որ երկրի զինված ուժերի բազմապատկումը և սպառազինությունների մրցավազքը տանում են դեպի ռազմական արդյունաբերության ծավալումը, դեպի

քաղաքացիական արդյունաբերության կրճատումը, դեպի քաղաքացիական մեծ կառուցումների կանգնեցումը, դեպի հարկերի բարձրացումը, դեպի մասսայական սպառման ապրանքների գների բարձրացումը: Հասկանալի է, որ երբ Սովետական Միությունը չի կրճատում, այլ, ընդհակառակը, ընդլայնում է քաղաքացիական արդյունաբերությունը, չի կծկում, այլ, ընդհակառակը, ծավալում է նոր վիթխարի հիդրոկայանների և ոռոգման սիստեմների շինարարությունը, չի դադարեցնում, այլ, ընդհակառակը, շարունակում է գների իջեցման քաղաքականությունը,— ապա նա չի կարող դրա հետ միաժամանակ ուռճացնել ռազմական արդյունաբերությունը և բազմապատկել իր զինված ուժերը, առանց սնանկության վիճակի մեջ ընկնելու ռիսկի:

Եվ երբ պրեմյեր Էտլին, չնայած այդ բոլոր փաստերին և գիտական նկատառումներին, այնուամենայնիվ, հնարավոր է համարում բացե ի բաց զրպարտել Սովետական Միությանը և նրա խաղաղ քաղաքականու-



թյունը, ապա այդ կարելի է բացատրել միայն նրանով, որ նա մտածում է Սովետական Միության նկատմամբ զրպարտչությամբ արդարացնել սպառազինությունների մրցավազքը Անգլիայում, որ ներկայումս իրականացվում է լեյբորիստական կառավարության կողմից:

Պրեմյեր Էտլիին կեղծիք է հարկավոր Սովետական Միության մասին, նրան հարկավոր է Սովետական Միության խաղաղ քաղաքականությունը պատկերել որպես ագրեսիվ, իսկ անգլիական կառավարության ագրեսիվ քաղաքականությունը որպես խաղաղ քաղաքականություն, որպեսզի մոլորության մեջ գցի անգլիական ժողովրդին, նրա վզին փաթաթի ՍՍՀՄ-ի մասին այդ կեղծիքը և, այդպիսով, խաբեության միջոցով նրան ներքաշի նոր համաշխարհային պատերազմի մեջ, որը կազմակերպվում է Ամերիկայի Միացյալ Նահանգների կառավարող շրջանների կողմից:

Պրեմյեր Էտլին իրեն ձևացնում է որպես խաղաղության կողմնակից: Բայց եթե նա ի-

ւոք խաղաղության կողմն է, ինչո՞ւ նա մերժեց Սովետական Միության, Անգլիայի, Ամերիկայի Միացյալ Նահանգների, Չինաստանի և Ֆրանսիայի միջև անհապաղ խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Սովետական Միության առաջարկը՝ Միավորված Ազգերի Կազմակերպությունում:

Երբ նա իրոք խաղաղության կողմն է, ինչո՞ւ նա մերժեց Սովետական Միության առաջարկները՝ սպառազինությունների կրճատմանը անհապաղ ձեռնամուխ լինելու, ատոմային զենքը անհապաղ արգելելու վերաբերյալ:

Երբ նա իսկապես խաղաղության կողմն է, ինչո՞ւ է նա հետապնդում խաղաղության պաշտպանության կողմնակիցներին, ինչո՞ւ նա արգելեց խաղաղության պաշտպանների կոնգրեսը Անգլիայում: Մի՞թե խաղաղության պաշտպանության կամպանիան կարող է սպառնալ Անգլիայի անվտանգությանը:

Պարզ է, որ պրեմյեր Էտտլին ոչ թե խաղաղության պահպանման կողմն է, այլ նոր հա-



մաշխարհային ագրեսիվ պատերազմ հրահրելու կողմը:

ՀԱՐՑ: Դուք ի՞նչ եք մտածում Կորեայում տեղի ունեցող ինտերվենցիայի մասին, ինչով կարող է այն վերջանալ:

ՊԱՏԱՍԽԱՆ: Երբ Անգլիան և Ամերիկայի Միացյալ Նահանգները վերջնականապես մերժեն Չինաստանի ժողովրդական Կառավարության խաղաղ առաջարկները, ապա պատերազմը Կորեայում կարող է ավարտվել միայն ինտերվենտների պարտությամբ:

ՀԱՐՑ: Ինչո՞ւ: Մի՞թե ամերիկյան և անգլիական գեներալներն ու սպաները վատ են չինական և կորեական գեներալներից ու սպաներից:

ՊԱՏԱՍԽԱՆ: Ոչ, վատ չեն: Ամերիկյան և անգլիական գեներալներն ու սպաները ամենևին էլ վատ չեն ամեն մի այլ երկրի գեներալներից ու սպաներից: Ինչ վերաբերում է ԱՄՆ-ի և Անգլիայի զինվորներին, ապա հիտլերյան Գերմանիայի և միլիտարիստական

Ճապոնիայի դեմ մղված պատերազմում նրանք իրենց ցույց տվեցին, ինչպես հայտնի է, ամենալավագույն կողմից: Իսկ ինչո՞ւմն է բանը: Բանը նրանումն է, որ Կորեայի և Չինաստանի դեմ մղվող պատերազմը զինվորները համարում են անարդարացի պատերազմ, մինչդեռ հիտլերյան Գերմանիայի և միլիտարիստական Ճապոնիայի դեմ պատերազմը նրանք համարում էին լիովին արդարացի: Բանը նրանումն է, որ այդ պատերազմը բնավ ժողովրդականություն չի վայելում ամերիկյան և անգլիական զինվորների մեջ:

Իսկապես, դժվար է զինվորներին համոզել, թե Չինաստանը, որը չի սպառնում ոչ Անգլիային, ոչ Ամերիկային և որից Տայվան կղզին զավթել են ամերիկացիները,— հանդիսանում է ագրեսոր, իսկ Ամերիկայի Միացյալ Նահանգները, որոնք զավթել են Տայվան կղզին և իրենց զորքերը մոտեցրել Չինաստանի բուն սահմաններին,— հանդիսանում են պաշտպանվող կողմ: Դժվար է համոզել զինվորներին, որ Ամերիկայի Միացյալ Նահանգները իրավունք ունեն իրենց անվտանգությու-



նը պաշտպանելու Կորեայի տերիտորիայում և Չինաստանի սահմանների մոտ, իսկ Չինաստանը և Կորեան իրավունք չունեն իրենց անվտանգությունը պաշտպանելու իրենց սեփական տերիտորիայում կամ իրենց պետության սահմանների մոտ: Այստեղից էլ այն, որ պատերազմը ժողովրդականություն չի վայելում անգլո-ամերիկյան զինվորների մեջ:

Հասկանալի է, որ ամենափորձված գեներալները և սպաները կարող են պարտություն կրել, երբ զինվորները իրենց վզին փաթաթված պատերազմը համարում են խորապես անարդարացի և երբ դրա հետևանքով նրանք իրենց պարտականությունները ռազմաճակատում կատարում են ձևականորեն, առանց հավատալու իրենց միսիայի արդարացիությանը, առանց ոգևորության:

ՀԱՐՑ: Դուք ինչպե՞ս եք գնահատում Միավորված Ազգերի Կազմակերպության (ՄԱԿ-ի) որոշումը, որով Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան հայտարարվում է ագրեսոր:

ՊԱՏԱՍԽԱՆ: Ես այն գնահատում եմ որպես խայտառակ որոշում:

Իրոք, հարկավոր է կորցնել խղճի վերջին մնացորդները՝ պնդելու համար, որ Ամերիկայի Միացյալ Նահանգները, որոնք զավթել են չինական տերիտորիան՝ Տայվան կղզին, և ներխուժել են Կորեա՝ դեպի Չինաստանի սահմանները,— հանդիսանում են պաշտպանվող կողմ, իսկ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, որը պաշտպանում է իր սահմանները և ջանում է իրեն վերադարձնել ամերիկացիների կողմից զավթված Տայվան կղզին, հանդիսանում է ագրեսոր:

Միավորված Ազգերի Կազմակերպությունը, որը ստեղծվել է որպես խաղաղության պահպանման պատվար, վերածվում է պատերազմի գործիքի, նոր համաշխարհային պատերազմի հրահրման միջոցի: ՄԱԿ-ի ագրեսորական կորիզը հանդիսանում են ագրեսիվ Հյուսիս-Ատլանտյան պակտի անդամ տասը երկրները (ԱՄՆ-ը, Անգլիան, Ֆրանսիան, Կանադան, Բելգիան, Հոլանդիան,



Լյուքսեմբուրգը, Դանիան, Նորվեգիան, Իսլանդիան) և Լատինա-ամերիկյան քսան երկրներ (Արգենտինան, Բրազիլիան, Բոլիվիան, Չիլին, Կոլումբիան, Կոստա-Ռիկան, Կուբան, Դոմինիկյան ռեսպուբլիկան, Էկվադորը, Սալվադորը, Գվատեմալան, Հաիթին, Գոնդուրասը, Մեքսիկան, Նիկարագուան, Պանաման, Պարագվայը, Պերուն, Ուրուգվայը, Վենեցուելան): Այդ երկրների ներկայացուցիչներն էլ հենց այժմ ՄԱԿ-ում որոշում են պատերազմի և խաղաղության բախտը: Այդ նրանք ՄԱԿ-ում անցկացրեցին Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ագրեսիվության վերաբերյալ խայտառակ որոշումը:

ՄԱԿ-ում տիրող այժմյան կարգերի համար բնորոշ է, օրինակ, որ Ամերիկայում ոչ մեծ Դոմինիկյան ռեսպուբլիկան, որտեղ հաշվվում է հազիվ երկու միլիոն բնակչություն, այժմ նույնպիսի կշիռ ունի ՄԱԿ-ում, ինչպես Հնդկաստանը, և շատ ավելի մեծ կշիռ, քան Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, որը զրկված է ՄԱԿ-ում ձայնի իրավունքից:

Այսպիսով վերածվելով ագրեսիվ պատե-

րազմի գործիքի, ՄԱԿ-ը դրա հետ միասին դադարում է իրավահավասար ազգերի համաշխարհային կազմակերպություն լինելուց: Ըստ էության, ՄԱԿ-ը այժմ հանդիսանում է ոչ այնքան համաշխարհային կազմակերպություն, որքան կազմակերպություն ամերիկացիների համար, որը գործում է հօգուտ ամերիկյան ագրեսորների: Նոր պատերազմի հրահրմանը ձգտում են ոչ միայն Ամերիկայի Միացյալ Նահանգներն ու Կանադան, այլ այդ ուղու վրա են կանգնած նաև Լատինաամերիկյան բոլոր երկրները, որոնց կալվածատերերը և վաճառականները ծարավի են նոր պատերազմի՝ որևէ տեղ Եվրոպայում կամ Ասիայում, որպեսզի պատերազմող երկրներին ապրանքներ վաճառեն գերբարձր գներով և միլիոններ դիզեն այդ արյունոտ գործում: Ոչ ոքի համար գաղտնիք չէ այն փաստը, որ Լատինա-ամերիկյան բոլոր երկրների բոլոր ներկայացուցիչները այժմ ներկայացնում են Ամերիկայի Միացյալ Նահանգների առավել համախմբված և հլու-հնազանդ բանակը ՄԱԿ-ում:



Միավորված Ազգերի Կազմակերպությունը այդպիսով, կանգնում է Ազգերի Լիգայի անփառունակ ուղու վրա: Դրանով իսկ նա թաղում է իր բարոյական հեղինակությունը և իրեն մատնում է քայքայման:

ՀԱՐՑ.— Արդյո՞ք անխուսափելի եք համարում համաշխարհային նոր պատերազմը:

ՊԱՏԱՍԽԱՆ: Ոչ: Համենայն դեպս ներկայումս այն չի կարելի համարել անխուսափելի:

Իհարկե, Ամերիկայի Միացյալ Նահանգներում, Անգլիայում, ինչպես և Ֆրանսիայում կան ագրեսիվ ուժեր, որոնք ծարավի են նոր պատերազմի: Պատերազմը նրանց հարկավոր է գերշահույթներ ստանալու համար, ուրիշ երկրներին կողոպտելու համար: Այդ միլիարդատերերն ու միլիոնատերերն են, որոնք պատերազմը դիտում են որպես մի եկամտաբեր հոդված:

Նրանք, այդ ագրեսիվ ուժերը, իրենց ձեռքում են պահում ռեակցիոն կառավարու-

թյուններին և ուղղություն են տալիս նրանց: Բայց նրանք դրա հետ միասին վախենում են իրենց ժողովուրդներից, որոնք նոր պատերազմ չեն ցանկանում և խաղաղությունը պահպանելու կողմն են: Այդ պատճառով նրանք աշխատում են օգտագործել ռեակցիոն կառավարությունների, որպեսզի կեղծիքով մոլորեցնեն իրենց ժողովուրդներին, նրանց խաբեն և նոր պատերազմը ներկայացնեն որպես պաշտպանական, իսկ խաղաղասեր երկրների խաղաղ քաղաքականությունը՝ որպես ագրեսիվ քաղաքականություն: Նրանք ջանում են խաբել իրենց ժողովուրդներին, որպեսզի նրանց վզին փաթաթեն իրենց ագրեսիվ պլանները և նրանց ներքաշեն նոր պատերազմի մեջ:

Հենց այդ պատճառով նրանք վախենում են խաղաղության պաշտպանության կամպանիայից, երկյուղ կրելով, թե այն կարող է մերկացնել ռեակցիոն կառավարությունների ագրեսիվ դիտավորությունները:

Հենց այդ պատճառով նրանք ձախողեցին



խաղաղության Պակտ կնքելու, սպառազինությունները կրճատելու, ատոմային զենքն արգելելու վերաբերյալ Սովետական Միության առաջարկները, վախենալով, որ այդ առաջարկների ընդունումը կքայքայի ռեակցիոն կառավարությունների ագրեսիվ միջոցառումները և ավելորդ կդարձնի սպառազինությունների մրցավազքը:

Ինչո՞վ կվերջանա ագրեսիվ և խաղաղասեր ուժերի այդ պայքարը:

Խաղաղությունը կպահպանվի և կամրապնդվի, եթե ժողովուրդները խաղաղության պահպանման գործը վերցնեն իրենց ձեռքը և այն պաշտպանեն մինչև վերջ: Պատերազմը կարող է դառնալ անխուսափելի, եթե պատերազմի հրձիգներին հաջողվի կեղծիքով մոլորեցնել ժողովրդական մասսաներին, նրանց խաբել և նրանց ներքաշել համաշխարհային նոր պատերազմի մեջ:

Ուստի խաղաղության պահպանման համար լայն կամպանիան, որպես պատերազմի

հրձիգների մեքենայությունների մերկացման միջոց, այժմ առաջնակարգ նշանակություն ունի։

Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նա, այսուհետև էլ անսասանորեն կվարի պատերազմը կանխելու և խաղաղությունը պահպանելու քաղաքականություն։



## ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԵՎ ԱՆՊԱՐՏԻԱԿԱՆՆԵՐԻ ԲԼՈԿԻ ՆՈՐ ՀԱՂԹԱՆԱԿԸ

*Հրապարակված է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների Կենտրոնական ընտրական հանձնաժողովի հաղորդագրությունը 1951 թվականի փետրվարին տեղի ունեցած Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների արդյունքների մասին։ Հաղորդագրության մեջ ասված է, որ բոլոր ընտրական օկրուգներում ընտրողների ընդհանուր թիվը կազմել է 786.263 մարդ, որոնցից Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատների ընտրություններին մասնակցել են 786.253 մարդ, կամ ցուցակագրված ընտրողների ընդհանուր թվի ավելի քան 99,99 տոկոսը։*

*Բոլոր ընտրական օկրուգներում կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին քվեարկել են 785.799 ընտրողներ, որ կազմում է քվեարկության*

մասնակցած ընտրողների ընդհանուր թվի 99,94 տոկոսը։ Դեպուտատության թեկնածուների դեմ քվեարկել են 443 մարդ, կամ քվեարկությանը մասնակցած ընտրողների ընդհանուր թվի 0,06 տոկոսը։

Ընտրված բոլոր դեպուտատները հանդիսանում են կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուներ։

Ռեսպուբլիկայում ընտրությունները վերածվեցին համաժողովրդական ցնծության։ Փետրվարի 25-ին Սովետական Հայաստանի աշխատավորությունը մեկ անգամ ևս ցուցադրեց իր բարոյա-քաղաքական միասնությունը, դեպի բոլշևիկների պարտիան, սովետական կառավարությունը, դեպի հարազատ Ստալինն ունեցած իր անսահման սերն ու նվիրվածությունը։ Ռեսպուբլիկայի աշխատավորները դեպի քվեատուփերն էին գնում սովետական ժողովրդի բոլոր հաղթանակների ոգեշնչող ու կազմակերպիչ, պրոգրեսիվ մարդկության հանճարեղ առաջնորդ, հայ ժողովրդի մեծ ազատարար, համաժողովրդական առաջին թեկնածու Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի անունը շուրթերին։

Խորապես հուզիչ են այն բազմաթիվ հակիրճ, պարզ, բայց սրտաբուխ ու անկեղծ



խոսքերը, որոնք իրենց ընտրական բյուլետենների վրա գրել են Երևան քաղաքի Ստալինյան ռայոնի № 1 գործարանային ընտրական օկրուգի ընտրողները, որոնց բախտ էր վիճակվել քվեարկելու ընկեր Ստալինի օգտին։ «Ընկեր Ստալինի օգտին, խաղաղության օգտին», «Փա՜ռք մեծ Ստալինին». «Քվեարկում եմ հարազատ Ստալինի օգտին. կոմունիզմի օգտին», «Մեր երջանկության. մեր ազատ ու բերկրալից կյանքի օգտին»,— գրում են աշխատավորներն իրենց ընտրական բյուլետեններում։

Երևան քաղաքի № 1 գործարանային ընտրական օկրուգի աշխատավորները միահամուռ կերպով իրենց ձայնն են տվել ժողովուրդների մեծ առաջնորդ ընկեր Ստալինին։

Սովետական Հայաստանի աշխատավորները միահամուռ կերպով Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատներ են ընտրել ընկեր Ստալինի մերձավոր զինակիցներ՝ Վ. Մ. Մոլոտովին, Գ. Մ. Մալենկովին, Ա. Ի. Միկոյանին, Լ. Պ. Բերիային և Հայաստանի բոլշևիկների մարտական ղեկավար, հավատարիմ ստալինյան Գր. Հարությունյանին։

Սովետական Հայաստանի աշխատավորությունն իր գերագույն օրգանում ընտրել է

ռեսպուբլիկայի լավագույն մարդկանց, կոմունիզմի կառուցման առաջամարտիկներին։

Միահամուռ կերպով քվեարկելով կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին, Սովետական Հայաստանի աշխատավորությունը քվեարկեց բոլշևիկների պարտիայի, սովետական կառավարության, մեծ Ստալինի օգտին, մեր Հայրենիքի է՛լ ավելի ծաղկման ու բարգավաճման օգտին։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրական կամպանիայի ընթացքում պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ գյուղի և քաղաքի աշխատավորների ամենալայն խավերի մեջ ագիտացիոն-մասսայական խոշոր աշխատանք կատարվեց։ Հազարավոր ագիտատորներ աշխատավոր մասսաների մեջ տարածում էին Լենինի—Ստալինի ամենահաղթ, վեհ գաղափարները, նրանց պատմում էին բոլշևիկյան պարտիայի, մեծ Ստալինի ղեկավարությամբ մեր երկրի տարած համաշխարհային-պատմական հաղթանակների մասին։ Ընտրական կամպանիայի ընթացքում մեծ չափով ավելացավ ագիտկոլեկտիվների թիվը, ագիտատորներ ա-



ռաջադրվեցին քաղաքականապես պատրաստված, կարող հարյուրավոր նոր մարդիկ։ Բավական է ասել, որ միայն Երևան քաղաքում ընտրական կամպանիայի ընթացքում ագիտացիոն-մասսայական աշխատանքներում ներգրավված էին մոտ 10 հազար ագիտատորներ։ Ընտրական կամպանիայի ընթացքում ագիտկոլեկտիվները, ագիտատորներն աշխատավորների մեջ տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքի լուրջ փորձ կուտակեցին։ Այսուհետև խնդիրը կայանում է նրանում, որպեսզի հենվելով այդ փորձի վրա, քաղաքական ագիտացիան բարձրացվի նոր, ավելի բարձր աստիճանի։ Անհրաժեշտ է խուսափել նախորդ տարիներում տեղի ունեցած այն սխալներից, երբ մի շարք ագիտկոլեկտիվներ, ընտրությունների ավարտվելուց հետո դադարեցնում էին ըստ նախկին ընտրական տեղամասերի ազգաբնակչության մեջ տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքը։

Բոլշևիկյան ագիտացիան պետք է տարվի անընդհատ, ամեն օր, և ոչ միայն ձեռնարկություններում, կոլխոզներում, հիմնարկություններում, այլև ըստ ազգաբնակչության

բնակավայրի, թաղամասերում։ Ճիշտ են վարվում այն պարտիական կազմակերպությունները ու ագիտկոլեկտիվները, որոնք ազգաբնակչության մեջ ագիտացիոն-մասսայական աշխատանք տանելու համար հենց այժմվանից թաղամասերին են ամրացնում այն ագիտատորներին, որոնք այնտեղ աշխատում էին ընտրական կամպանիայի ընթացքում։

Ընտրական կամպանիայի շրջանում ագիտացիոն-մասսայական աշխատանքը տարվում էր բազմապիսի ձևերով։ Անհրաժեշտ է, որպեսզի քաղաքական ագիտացիայի փորձով ստուգված բոլոր ձևերն ու մեթոդները կիրառվեն նաև հետագայում։

Արդյունաբերական ձեռնարկություններում, նորակառույցներում, տրանսպորտում ագիտատորները պետք է բարձրացնեն աշխատավորների խանդավառությունը, օգնեն նրանց՝ կատարելու և գերակատարելու արտադրական առաջադրանքները, իջեցնելու արտադրանքի ինքնարժեքը և բարձրացնելու նրա որակը։ Գյուղական ագիտատորների առաջնահերթ խնդիրն է պարզաբանել կոլտնտեսականներին, սովխոզների և մեքենատրակտորային կայանների աշխատողներին՝ գյուղատնտեսության նոր վերելք կազմակեր-



պելու վերաբերյալ մեր պարտիայի և կառավարության որոշումները, մոբիլիզացնել գյուղի աշխատավորների ուժերը՝ առաջիկա գարնանացանը կազմ ու պատրաստ դիմավորելու, այն սեղմ ժամկետներում և բարձր ագրոկանոններով կատարելու համար։

Զինված Լենինի—Ստալինի վեհ գաղափարներով՝ սովետական մարդիկ հերոսաբար պայքարում են կոմունիզմի նոր, ավելի հոյակապ հաղթանակների համար։ Այդ հերոսական պայքարում իրենց պատվավոր անելիքներն ունեն ագիտատորները։



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՎՐԱՍՏԱՆԸ

## (Նյութեր զրույցների համար)

*Նախառևոլուցիոն Վրաստանը եղել է ցարական Ռուսաստանի մի հետամնաց ծայրամասը, որի էկոնոմիկայի հիմքն էր կազմում հետամնաց գյուղատնտեսությունը։*

*Վրաստանի աշխատավորները առանձնապես մեծ տառապանքներ էին կրում մենշևիկների տիրապետության տարիներին, որոնք երկիրը կատարյալ անկման ու քայքայման էին հասցրել։*

*Վրաստանի այդ ժամանակաշրջանի տնտեսական ու քաղաքական դրության սպառիչ բնութագիրը տվել է ընկեր Ստալինը 1920 թվականի նոյեմբերի 30-ին «Պրավդա»-յում տպագրված հոդվածում։*

*«...Անտանտայի ցանցերում խճճված և դրա հետևանքով ինչպես Բաքվի նավթից, այնպես էլ Կուբանի հացից զրկված Վրաստանը, որ Անգլիայի ու Ֆրանսիայի իմպերիալիստական օպերացիաների հիմնական*



*բազան է դարձել և այդ պատճառով էլ թշնամական հարաբերությունների մեջ է մտել Սովետական Ռուսաստանի հետ,— այդ Վրաստանն այժմ իր կյանքի վերջին օրերն է ապրում»,— ասված է այդ հոդվածում։*

*Բազմադարյան վրաց ժողովրդի ծաղկումն ու բարգավաճումը սկսվեց միայն 1921 թվականից։ Վրաստանի աշխատավորները, դեն շպրտելով վրաց ժողովրդի թշնամիների՝ մենշևիկների ատելի լուծը, երկրում հաստատեցին սովետական իշխանություն։*

*Սովետական իշխանության հաստատումով վրաց ժողովուրդը փրկվեց լիակատար քայքայումից։ Սովետական իշխանությունը, Լենինի—Ստալինի պարտիան ուղիներ հարթեցին Վրաստանի տնտեսական, քաղաքական և կուլտուրական վերածնության համար։ Սոցիալիստական ինդուստրացման չըտեսնված տեմպերը, նոր գործարանների ու ֆաբրիկաների ծնունդը, բազմաճյուղ գյուղատնտեսության զարգացումը և կուլտուրայի ծաղկումը՝ Սովետական Վրաստանը դարձրին ինդուստրիալ-կոլխոզային հզոր բարգավաճ ռեսպուբլիկա։*

*Սովետական իշխանության տարիներին Վրաստանում ստեղծվել են արդյունաբերու-*

թյան մի ամբողջ շարք նոր ճյուղեր։ Արդյունաբերության վերակառուցված և նոր ստեղծված ճյուղերը երկրին տալիս են՝ քարածուխ, մարգանից, նավթ, ֆերրոձուլվածքներ, պողպատ, բուրդ, դազգահներ, մեքենաներ, ցեմենտ, մարմար, դիատոմիտ, բրդյա և մետաքսյա գործվածքեղեն, թեյ, շաքար, ծխախոտ, խաղող, գինի, պահածոներ և բազմապիսի այլ արտադրանքներ։ Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը, հաջողությամբ կատարելով հետպատերազմյան ստալինյան հնգամյակը, արդեն 1947 թվականին զգալի չափով գերազանցեց արտադրության մինչպատերազմյան մակարդակը, իսկ 1950 թվականին այդ մակարդակը գերազանցվեց ավելի քան 52 տոկոսով։

Վրաստանի ընդերքից արդյունահանվող հումքը լիովին ապահովում է ռեսպուբլիկայի արդյունաբերության կարիքները։ Ջիաթուրիի շրջանում արդյունահանվում է մարգանեցը, որն անհրաժեշտ է մետալուրգիայի համար, Տկվարչելիի և Տկվիբուլիի շրջանում՝ քարածուխը։ Զեստաֆոնի ֆերրոձուլվածքների գործարանում վերամշակման է ենթարկվում Ջիաթուրիի մարգանեցը։ Թբիլիսիի գործարանները բարդ մեքենաներ են արտադրում տեքստիլ արդյունաբերության



համար, իսկ Բաթումիի ձեռնարկությունները վերամշակում են ցիտրուսային պտուղները և զբաղվում նավթաթորմամբ։

Այս թվարկմամբ ամենևին չի սպառվում ռեսպուբլիկայի ձեռնարկությունների ցանկը։ Տարեց-տարի շարք են մտնում նոր գործարաններ ու ֆաբրիկաներ, որոնք հագեցված են հայրենական նորագույն տեխնիկայով։ Կառուցվել են մի ամբողջ շարք հիդրոէլեկտրակայաններ, որոնք էլեկտրաէներգիա են մատակարարում աճող արդյունաբերությանը և սոցիալիստական գյուղատնտեսությանը։

Վրաստանի արդյունաբերությունն անշեղ վերելք է ապրում։ Ռեսպուբլիկայի բազմաթիվ ձեռնարկություններ ժամկետից շուտ կատարեցին հետպատերազմյան ստալինյան հնգամյա պլանը։ Հազարավոր բանվորներ, բանվորուհիներ և ինժեներա-տեխնիկական աշխատողներ կատարել ու գերակատարել են պետության հանդեպ ստանձնած իրենց պարտավորությունները։

Անցած երեք տասնամյակում խոշոր հաջողություններ է ձեռք բերել Սովետական Վրաստանի նաև սոցիալիստական գյուղատնտեսությունը։ Զգալիորեն ընդարձակվել են ցանքատարածությունները, բարձրացել է

բերքատվությունը։ Խոշոր չափով զարգացել է հանրային անասնապահությունը։ Արմատապես բարելավվել է կոլխոզային գյուղացիության նյութական-կենցաղային դրությունը։ 1950 թվականին միլիոնատեր կոլտնտեսությունների թիվը Վրաստանում հասնում էր 315-ի։

Կատարելով Վ. Ի. Լենինի պատգամները և ընկեր Ստալինի ցուցումները, Վրաստանի աշխատավորները սովետական իշխանության տարիներին մեծ աշխատանք կատարեցին գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման և հողերի ոռոգման ասպարեզում։ Կառուցվել են 7 խոշոր մեքենայացված ոռոգիչ սիստեմներ, որոնք ջրով ապահովում են կոլխոզային և սովխոզային անծայրածիր հողային տարածությունները։ Այժմ կառուցվում է 5 և շուտով կկառուցվի 15 նոր ոռոգիչ սիստեմներ։ Վրաստանի ոռոգվող հողերի տարածությունները հսկայական չափերով կավելանան և 1957 թվականին կհասնեն 570 հազար հեկտարի։

Գյուղական հիդրոէլեկտրակայանները անխափան կերպով էլեկտրաէներգիա են մատակարարում ռեսպուբլիկայի ավելի քան 700 կոլխոզների։



Աշխարհագրական և կլիմայական հիանալի պայմանների շնորհիվ Վրաստանում, հացահատիկային կուլտուրաներից բացի, աճեցվում են մի շարք թանկարժեք տեխնիկական կուլտուրաներ։ Կենսագործելով Համ.Կ(բ)Պ Կենտկոմի և անձամբ ընկեր Ստալինի ցուցումները, Վրաստանը դարձել է արդյունաբերական չափերով թեյ, ծխախոտ, նարինջ, կիտրոն և այլ ցիտրուսներ արտադրող ռեսպուբլիկա։ Վրաստանի թեյագործական շրջանների աշխատավորները հաջողությամբ կատարում են ընկեր Ստալինի առաջադրանքը՝ Սովետական Միության թեյի պահանջը սեփական արտադրությամբ բավարարելու վերաբերյալ։ Արդեն անցյալ տարի Վրաստանի թեյի պլանտացիաներից հավաքվեց ավելի քան 83.000 տոննա կանաչ թեյատերև։ Հավաքված ամբողջ կանաչ թեյատերևը վերամշակվում է թեյի ֆաբրիկաներում։ Այդ ֆաբրիկաների արտադրած թեյերը ոչնչով չեն զիջում Ցեյլոնի նշանավոր թեյին։

«Բուրումնավետ հեկտարներ»— այսպես են կոչվում եթերային ձեթատու կուլտուրաների պլանտացիաները, որոնք մեծ տարածություններ են բռնում Վրաստանի մերձա-

ընտադարձային շրջաններում։ Այդ խիստ թանկարժեք տեխնիկական կուլտուրայից ստացվում է եթերային անուշահոտ յուղ, որը ռևոլյուցիայից առաջ ներմուծվում էր Աֆրիկայից, Հնդկաստանից, Հնդկաչինից։

Բոլշևիկյան պարտիան և սովետական կառավարությունը բարձր գնահատեցին Վրացական ՍՍՌ-ի գյուղատնտեսության աշխատողների անձնվեր աշխատանքը։ Հետպատերազմյան տարիներին ձեռք բերած հաջողությունների համար ռեսպուբլիկայի 899 կոլխոզնիկներ, սովխոզների բանվորներ, գյուղատնտեսության մասնագետներ և պարտիական ու սովետական աշխատողներ արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման, իսկ ավելի քան 7.200 մարդ պարգևատրվել է Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով։

Լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության շնորհիվ Սովետական իշխանության տարիներին աննախընթաց զարգացում ապրեց վրաց ժողովրդի կուլտուրան։ Այժմ Վրաստանում կա 4350 հանրակրթական դպրոց, որտեղ սովորում են ավելի քան 750 հազար աշակերտ և որտեղ դաստիարակվում են ավելի քան 40 հազար մանկավարժ։



Վրաստանի քաղաքներում գործում են 19 բարձրագույն ուսումնական հաստատություններ, որտեղ սովորում են 35 հազար ուսանող։

Տասը տարի առաջ ստեղծված Վրացական ՍՍՌ Գիտությունների ակադեմիան միավորում է 45 զանազան գիտա-հետազոտական հիմնարկներ, որտեղ աշխատում են գիտության 109 դոկտորներ և 473 թեկնածուներ։

Անճանաչելի են դարձել Վրաստանի քաղաքները։ Ամեն տարի ընդարձակվում և բարեկարգվում են Բաթումի, Սուխումի, Քութայիսի, Ստալինիրի, Չիաթուրի, Փոթի և այլ քաղաքները։ Ստեղծվել է նոր սոցիալիստական քաղաք՝ Ռուսթավին, որը շարունակում է ընդարձակվել և ավելի ու ավելի բարեկարգվել։

Վեհորեն աճել և անճանաչելիորեն փոխվել է պատմական Գորի քաղաքը, որտեղ ծնվել և իր մանկությունն է անցկացրել աշխատավոր մարդկության հանճարեղ առաջնորդ մեծ Ստալինը։

Սովետական իշխանության տարիներին, լարված աշխատանքի տարիներին, ընկեր Բերիայի նախաձեռնությամբ ու ղեկավարությամբ Սովետական Վրաստանի մայրաքա-

ղաքը՝ Թբիլիսին ենթարկվեց վերակառուցման և դարձավ Սովետական Միության ամենագեղեցիկ, ամենաբարեկարգ ու կուլտուրական կենտրոններից մեկը։

Ռեսպուբլիկան հարուստ է նաև կուրորտներով։ Մեր լայնածավալ Հայրենիքի տասնյակ հազարավոր աշխատավորներ ամեն տարի հանգստանում են Ջելյոննի միսի, Ծղալտուբոյի, Գագրիի, Սուխումիի, Նոր Աֆոնի, Բորժոմի, Աբասթումանի, Կոբուլետիի և Վրաստանի այլ վայրերի հիանալի սանատորիաներում ու հանգստի տներում։

Հանրագումարի բերելով ռեսպուբլիկայի փայլուն հաղթանակներն ու նվաճումները, Սովետական Վրաստանի աշխատավորները իրենց խոհերն ու զգացմունքները, ջերմ սիրո ու երախտագիտության իրենց առաջին խոսքն ուղղում են փառապանծ կոմունիստական պարտիային, նրա առաջնորդ մեծ Ստալինին։

Միայն սովետական ժողովուրդների բարեկամության և փոխադարձ օգնության իրագործման մեջ Սովետական Վրաստանը կարող էր ձեռք բերել իր տնտեսական և կուլտուրական զարգացման այս հիանալի հաջողությունները։ Անդրկովկասի ռեսպուբ-



լիկաների ժողովուրդների եղբայրական բարեկամությունը ՍՍՌՄ ժողովուրդների ստալինյան մեծ բարեկամության մի միասնական, անբաժանելի մասն է, այդ բարեկամության մի ամենավառ վկայությունը։ Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի ժողովուրդներին միավորել է սովետական հայրենասիրության վսեմ զգացմունքը։ Գնալով ավելի ու ավելի է ամրապնդվում նրանց անխախտ բարեկամությունը։ Այն իր արտահայտությունն է գտնում բանվորների, ծառայողների ամբողջ կոլեկտիվների, գիտնականների, ինժեներա-տեխնիկական աշխատողների, արվեստի աշխատողների և կոլտնտեսականների ստեղծագործական սերտ կապի մեջ։ Լենինականի տեքստիլագործները սոցիալիստական մրցության մեջ են Քութայիսիի տեքստիլագործների հետ, Հայաստանի կոլխոզնիկները՝ Վրաստանի կոլխոզնիկների հետ, Երևանի գործարանների կոլեկտիվները՝ Թբիլիսիի գործարանների կոլեկտիվների հետ։ Այդ բարեկամության շարժիչ ուժը սոցիալիստական մրցությունն է, պայքարը՝ մեր Հայրենիքի նյութական հարստություններն ավելացնելու համար, այն

*բանի ձգտումը, որ էլ ավելի ամրապնդվի ՍՍՌՄ-ի հզորությունը, բազմապատկվի նրա փառքը։*

*Նշբայլրական վրաց ժողովուրդը, նշելով ռեսպուբլիկայում սովետական իշխանության հաստատման պանծալի 30-ամյակը, ոչ մի րոպե չի մոռանում, որ իր չտեսնված բարգավաճման ու բուռն վերածնության համար նա պարտական է բոլշևիկյան պարտիային և նրա մեծ առաջնորդ, սիրելի և հարազատ հայր մեծ Ստալինին։*

*Սովետական Վրաստանի աշխատավորները, Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Մեծ Միության ժողովուրդների եղբայրական համերաշխ ընտանիքում, կռում են իրենց երջանկությունը, հասնելով նորանոր հաղթանակների՝ կոմունիստական շինարարության բոլոր ասպարեզներում։*

Ա. ՄԱՐՏԻՐՈՍՈՎ





# ԷՋՄԻԱԾՆԻ ՄՏ ԿԱՅԱՆԻ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԻՆ

*Էջմիածնի շրջանի № 2 Մեքենատրակտորային կայանը 1950 թվականը փակեց արտադրական բարձր ցուցանիշներով։ ՄՏ կայանը իր տարեկան բոլոր աշխատանքների պլանը (փափուկ վարի վերածած) կատարեց 128 տոկոսով, այդպիսով ռեսպուբլիկայի մեքենատրակտորային կայանների մեջ գրավելով երկրորդ տեղը։ Տարվա ընթացքում ՄՏ կայանը խնայեց 7265 կիլոգրամ նավթամթերք, ավելի քան 35 հազար տրակտորային մասեր և 14 տոկոսով իջեցրեց վարի ինքնարժեքը։*

*Մեքենատրակտորային կայանի այդ հաջողությունները մեծ մասամբ արդյունք էին այն բանի, որ նրա աշխատողները գյուղատնտեսական տարին սկսեցին տրակտորների և մյուս մեքենաների ու գործիքների վերանորոգումը ժամանակին և բարձր որակով ավարտած։*

Հենվելով անցյալ, ինչպես նաև նախորդ տարիների փորձի վրա, ՄՏ կայանի դիրեկցիան, պարտիական կազմակերպությունը այս տարի ևս ժամանակին բոլոր միջոցները ձեռք առան տրակտորների ու գարնանացանին անհրաժեշտ մյուս բոլոր մեքենաների ու գործիքների աշնան-ձմեռային նորոգումները բարձր որակով և ժամկետին ավարտելու համար։ Այդ գործում պարտիական կազմակերպության և դիրեկցիայի լավագույն օգնականները ՄՏ կայանի ագիտատորներն էին։

Արհեստանոցներում և բրիգադաներում ագիտացիոն-մասսայական աշխատանք կատարելու համար ՄՏ կայանի պարտկազմակերպությունը ագիտատորներ է առաջադրել քաղաքանապես պատրաստված, արտադրության հետ անմիջապես կապված լավագույն մեխանիզատորների։ Ագիտատորներ են նշանակված, օրինակ, գյուղատնտեսներ Ա. Կարապետյանը և Վ. Մելքումյանը, տրակտորային բրիգադաների բրիգադիրներ Գ. Գալըստյանը, Հ. Մարտիրոսյանը և ուրիշներ։

Մեքենաների աշնան-ձմեռային նորոգումներն սկսվելու հենց առաջին օրերին ագիտկոլեկտիվն իր նիստում քննության առավ այն հարցը, թե ինչպես պետք է ագիտա-



տորները օգնեն մեխանիզատորներին բարձր որակով և ժամկետին կատարելու նախատեսված աշխատանքները և հաղթող դուրս գալու շրջանի № 1 մեքենատրակտորային կայանի հետ կնքված սոցիալիստական մրցությունից։ Ագիտատորներին ցուցում տրըվեց՝ լայնորեն մասսայականացնել առաջավոր մեխանիզատորների փորձը, ագիտացիոն-մասսայական աշխատանքը կապել յուրաքանչյուր բրիգադայի, յուրաքանչյուր բանվորի աշխատանքի հետ, ամենօրյա հըսկողություն սահմանել կատարված նորոգումների որակի նկատմամբ, օգնել տրակտորիստներին անմիջապես, տեղն ու տեղը վերացնելու նկատվող թերությունները։

Իրենց առաջ դրված խնդիրները կատարելու համար ագիտատորները գործն սկսեցին նրանից, որ օգնեցին տրակտորիստներին և արհեստանոցների աշխատողներին կնքելու բրիգադային և անհատական սոցմրցության պայմանագրեր։ Այդ պայմանագրերով վերցրած պարտավորությունների կատարումն ստուգելու համար ագիտատորներն իրենց ամրացված բրիգադաների համար պատրաստեցին ցուցանիշների տախտակներ։ Յուրաքանչյուր շաբաթվա վերջում ագիտկոլեկ-

տիվի նիստում ագիտատորները զեկուցում էին իրենց ամրացված բրիգադայի կողմից վերցրած պարտավորությունների կատարման ընթացքի մասին և ապա ցուցանիշների տախտակի վրա, պարտավորությունների աղյուսակի դեմ նշում նրանց կատարողականը։

Թե ինչպես ագիտատորները մեխանիզատորներին կոնկրետ օգնություն էին ցույց տալիս արտադրության մեջ, նորոգումների գործում, այդ կարելի է տեսնել հետևյալ օրինակներից։

Տրակտորային 4-րդ բրիգադայի ագիտատորն է լավագույն մեխանիզատոր Հայկ Մարտիրոսյանը։ Բրիգադայի նորոգած տրակտորներից մեկի շրջանակն այնքան ծռմռված էր, որ տրակտորիստները հույս չունեին այն ուղղելու վրա և ցանկանում էին փոխարինել նորով։ Ագիտատոր Մարտիրոսյանը խրախուսեց տրակտորիստներին ուղղել շրջանակը և ինքն սկսեց օգնել այդ գործում։ Շրջանակն իրոք ուղղեցին և նորից գործածության մեջ դրին։ Պարտկազմակերպության հանձնարարությամբ ագիտատորները բոլոր բրիգադներում մասսայականացրին ագիտատոր Հ. Մարտիրոսյանի



նախաձեռնությամբ կատարված շրջանակի այդ նորոգման մանրամասնությունները։

Ահա նաև մեկ ուրիշ օրինակ։

Արհեստանոցում որպես ագիտատոր է աշխատում մեխանիկ Մ. Գալոյանը։ Նա ոչ միայն օգնում է արհեստանոցի աշխատողներին նորոգումները բարձր որակով կատարելու համար, այլև յուրաքանչյուր անգամ, երբ տրակտորը դուրս է գալիս նորոգումից, նա ինքն անձամբ, նորոգողների մասնակցությամբ նորից է ստուգում կատարված աշխատանքի որակը։ Դեպքեր են պատահել, երբ մեխանիկ-ագիտատորը, ստուգելով կատարված նորոգման որակը, հայտնաբերել է այնպիսի թերություններ, որոնք չէին նկատել նորոգողները։ Այդպիսի թերություն նա նկատեց, օրինակ, տրակտորիստ Գ. Էբեկյանի նորոգած տրակտորի թրթուրի վրա, Հ. Գալոյանի տրակտորի շարժիչի մեջ և այլն։ Յուրաքանչյուր այդպիսի՝ բավականին դժվար նկատելի թերություն հայտնաբերելու դեպքում ագիտատոր Մ. Գալոյանը մեխանիզատորներին մանրամասն բացատրում է, թե ինչպես պետք է ստուգել, որպեսզի այն նկատվի, ինչպես պետք է կատարվի նրա նորոգումը։

Փետրվարի 20-ին, ժամկետից 25 օր շուտ № 2 մեքենատրակտորային կայանը ավարտեց տրակտորների և գարնանացանի մյուս մեքենաների աշնան-ձմեռային նորոգումները, տալով պահեստային մասերի զգալի խնայողություն։ Մեքենատրակտորային կայանը կազմ ու պատրաստ սպասում է գարնանացանին։

Այսպիսով, գարնանացանի նախապատրաստության գործում իր վրա դրված խնդիրները պատվով կատարեց նաև մեքենատրակտորային կայանի ագիտկոլեկտիվը։

Վ. ԱՎԱԳՅԱՆ



# ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

Կանանց միջազգային օրը՝ մարտի 8-ը այս տարի սովետական ժողովուրդը նշում է սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում ձեռք բերած նորանոր, պանծալի նվաճումներով։ Հաջողությամբ կատարված են ստալինյան նոր հնգամյա պլանի առաջադրանքները, հնգամյակ, որի կենսագործումով սովետական ժողովուրդը մի նոր, խոշոր քայլ արեց դեպի կոմունիզմ։ Միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների ընտրություններում նորից դրսևորվեց կոմունիստների և անկուսակցականների ստալինյան անխախտելի բլոկի փայլուն հաղթանակը։

Սովետական երկրի կինը, տղամարդուն հավասար իրավունքներ ստացավ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլուցիայի հենց առաջին օրվանից։ 1919 թվականին Լենինը գրել է.

«Երկու տարվա ընթացքում Եվրոպայի ամենահետամնաց երկրներից մեկում Սովետական իշխանությունը կնոջ ազատագրման

համար, նրան «ուժեղ» սեռի հետ հավասարեցնելու համար այնքան բան արեց, որքան բան 130 տարվա ընթացքում չէին արել ամբողջ աշխարհի առաջավոր, լուսավորյալ «դեմոկրատական» բոլոր ռեսպուբլիկաները միասին վերցրած»։

Կինը մեր երկրի սոցիալիստական շինարարությանը, նրա տնտեսական ու քաղաքական կյանքի բոլոր բնագավառների ակտիվ մասնակիցն է։ Աշխարհի ամենադեմոկրատական՝ Ստալինյան Կոնստիտուցիան ապահովում է կնոջ իրավահավասար, ակտիվ, ազատ և գիտակից մասնակցությունը հասարակական ամբողջ կյանքին։ Սոցիալիստական արդյունաբերության մեջ, թե՛ նորակառույցների շինարարության վրա, կոլտնտեսային դաշտերում, թե՛ գիտության բնագավառում, ժողովրդական կրթության, թե՛ առողջապահության ասպարեզներում ամենուրեք կանայք, տղամարդկանց համահավասար, անձնվեր, ստեղծագործ աշխատանքով բազմապատկում են հարազատ Հայրենիքի փառքն ու հզորությունը, ցույց տալիս աշխատանքային սխրագործության, Հայրենիքին ազնվորեն ծառայելու փայլուն օրինակներ։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ



աշխատող բարձրագույն կրթության տեր մասնագետների մոտավորապես կեսը կանայք են։ Ավելի քան 327 հազար կին ինժեներներ ու տեխնիկներ են աշխատում հիմնարկ-ձեռնարկություններում։ 945 հազար ուսուցչուհիներ ջերմեռանդությամբ նըվիրված են մեր մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության գործին։ Մեկ միլիոնից ավելի կանայք աշխատում են ժողովրդական առողջապահության բնագավառում։

Սովետական Միությունում կան մոտ 60 հազար կին գիտական աշխատողներ։ Գիտության, տեխնիկայի, արվեստի, գրականության բնագավառներում ունեցած խոշոր հաջողությունների համար 399 կանայք արժանացել են Ստալինյան մրցանակի։

Սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում սովետական կնոջ կատարած անձնվեր աշխատանքի փայլուն ապացույց են հանդիսանում հետևյալ թվերը՝ 1988 կանայք արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման, ավելի քան 600 հազար կանայք պարգևատրվել են ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով։

Մեր երկրում կինը, ակտիվորեն մասնակցում է պետության ղեկավարման գործին։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատների թվում կա 280 կին։ Տասնյակ հազարավոր կանայք տեղական Սովետների, Միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների դեպուտատներ են։

Արդյունաբերության, գյուղատնտեսության և այլ բնագավառներում աշխատող հարյուրավոր առաջավոր, նորարար կանանց անուններ հայտնի են մեր ամբողջ երկրին։ Մոսկվայի «Փարիզյան Կոմունա» կոշիկի ֆաբրիկայի բանվորուհի Լիդիա Կորաբելնիկովայի օրինակով ամբողջ երկրում շարժում ծավալվեց հումքի կոմպլեքսային խնայողության համար, Մոսկվայի Ավտոգործարանի բանվորուհի, Ստալինյան մրցանակի լաուրեատ Նինա Վասիլևայի օրինակով շարժում ծավալվեց սարքավորումներն ու մեքենաները սոցիալիստական պաշտպանության տակ վերցնելու համար և այլն։ Հազարավոր տրակտորային բրիգադաներ, աշխատելով ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս տրակտորիստ Պրասկովիա Անգելինայի ղեկավարած կանանց տրակտորային բրիգադայի



օրինակով, աշխատանքի արտադրողականության փայլուն ցուցանիշներ են տալիս։

Իրենց լավագույն աշխատանքով հայտնի դարձած հարյուրավոր և հազարավոր կանայք կան նաև մեր ռեսպուբլիկաներում՝ Հայկական ՍՍՌ-ում։ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատների թվումն են Երևանի Ջեթ-օճառ կոմբինատի հմուտ ապարատավար Յողիկ Գևորգյանը, Կոշիկի № 1 ֆաբրիկայի անվանի վարպետ Նվարդ Միքայելյանը, Ավտոդողերի գործարանի ստախանովական բանվորուհի Անիսիա Բարաբանովան, Նոր Բայազետի շրջանի Նորադուզ գյուղի կոլտնտեսության օղակավարուհի, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Սիրանուշ Ասատրյանը, Երևանի Մանկական կլինիկայի վաստակավոր բժշկուհի Սիրանուշ Սլկունին, քիմիական գիտությունների դոկտոր Արաքսյա Բաբայանը և շատ ուրիշներ։

Մեր երկրում կինը շրջապատված է պետության ամենօրյա ջերմ հոգատարությամբ։ Մայրության և մանկության պահպանության վրա պետությունը ամեն տարի հսկայական գումարներ է ծախսում։ Երկրում ստեղծված է ծննդատների, մանկամսուրների, կաթնախոհանոցների ու մանկապարտեզների լայն ցանց, բազմազավակ և միայնակ մայրերը

թոշակ են ստանում պետությունից։ Ավելի քան 3 միլիոն սովետական կանայք պարգևատրված են «Մայրական փառք» շքանշանով և «Մայրության մեդալ»-ով, ավելի քան 33 հազար կանայք պարգևատրված են «Հերոսուհի մայր» պատվավոր կոչումով։

Բոլշևիկների պարտիան և սովետական իշխանությունը կնոջ համար ստեղծել են կյանքում, ցանկացած բնագավառում առաջ գնալու բոլոր պայմանները։ Մեր երկրում միանգամայն բնական, սովորական երևույթ է, երբ բանվորուհին սովորում և դառնում է գիտնական, կամ խոշոր ձեռնարկության ղեկավար, երբ գեղջկուհին դառնում է պետական գործիչ։

Ուզբեկուհի Միխրինիսա Ուբայդուլաևան շարքային կոլտնտեսուհի էր։ Լավ աշխատանքի համար նրան նշանակեցին օղակավարուհի։ Հայրենասեր գեղջկուհին նվիրված, անձնվեր աշխատանքով ստացավ ճակնդեղի ռեկորդային բերք՝ իր օղակի մշակած յուրաքանչյուր հեկտարից պետությանը հանձնեց 810 ցենտներ ճակնդեղ և արժանացավ Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման։ Անվանի կոլտնտեսուհուն Ուզբեկստանի աշխատավորներն ընտրեցին ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպու-



տատ։ Այժմ Միխրինիսա Ուբայդուլաևան սովորում է Տաշքենդի Գյուղատնտեսական ինստիտուտում։

Շարքային գեղջկուհուց աճել և պետական գործիչ է դարձել Էջմիածնի շրջանային Սովետի գործկոմի նախագահ, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ Ռեբեկա Ղարիբյանը։ Նախկին ջուլհակուհի Հրանուշ Բարսեղյանը, որին Երևանի աշխատավորներն ընտրել են Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ, երկար տարիներ է, ինչ հմուտ կերպով ղեկավարում է Մետաքսաթելի ֆաբրիկան։ Բերիայի շրջանի Բերիայի անվան կոլտնտեսության նախագահն է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Նազանի Գալստյանը։ Նրա կենսագրությունը նման է տասնյակ-հազարավոր սովետական այն կանանց կենսագրություններին, որոնք դեռ մանուկ հասակից զրկվելով ծնողներից, աճել ու կյանքում իրենց տեղն են գտել սովետական իշխանության ջերմ հոգատարության շնորհիվ։

Ահա մի քանի թվեր, որոնք պերճախոս կերպով ցույց են տալիս, թե կանայք ինչպիսի ակտիվ մասնակցություն ունեն մեր ռեսպուբլիկայի տնտեսական կյանքում, ինչպես են մասնակցում նրա կառավարմանը։ Հայ-

կական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատների թվում կան 90 կանայք, տեղական Սովետներում ընտրված են 4193 կանայք, 107 կանայք գյուղսովետի նախագահներ են, 14 կանայք՝ գործարանների դիրեկտորներ։

Բոլորովին այլ է աշխատավոր կնոջ վիճակը կապիտալիստական երկրներում։ Ծայրաստիճան աղքատություն ու սով, ուժերից վեր հյուծող աշխատանք, անիրավահավասարություն, ապագայի ոչ մի պայծառ հեռանկար— ահա թե ինչ բաժին ունի կյանքում աշխատավոր կինը կապիտալի աշխարհում։

Շատ կապիտալիստական երկրներում, այդ թվում և Անգլիայում, կանայք, միևնույն աշխատանքի համար, երկու անգամ պակաս վարձատրություն են ստանում, քան տղամարդիկ։ Մալայական գեղջկուհին ձիու փոխարեն լծվում է գութանին, Ավղանստանում կինն առ ու ծախքի առարկա է։ Թյուրքական ռեակցիան չի ընդունում կանանց բարձրագույն կրթություն ստանալու իրավունքը, այնտեղ 100 կանանցից 92-ը անգրագետ են, կանանց արգելված է աշխատել պետական հիմնարկներում։

Աշխատավորական մասսաների համար



կյանքի քիչ թե շատ տանելի պայմաններ ստեղծելու փոխարեն կապիտալիստական երկրների ռեակցիոն կառավարությունները տենդագին կերպով նոր, արյունալի պատերազմ են նախապատրաստում։ Բայց նոր պատերազմի ծագումը միայն մարդկային արյան ծարավ գիշատիչ կապիտալիստների ու նրանց ռեակցիոն կառավարությունների կամքից չի կախված։ «Պրավդա»-յի թղթակցի հարցերին տված իր պատասխանների մեջ ընկեր Ստալինը նշել է, որ «Խաղաղությունը կպահպանվի և կամրապնդվի, եթե ժողովուրդները խաղաղության պահպանման գործը վերցնեն իրենց ձեռքը և այն պաշտպանեն մինչև վերջ»։

Խաղաղության պաշտպանման, նրա համար մղվող պայքարում սովետական կանայք քայլում են առաջին շարքերում։ Իրենց անձնվեր աշխատանքով նրանք է՛լ ավելի են ամրապնդում մեր երկրի՝ խաղաղության անսասան պատվարի հզորությունը։

Սովետական կանանց հերոսական օրինակը ոգեշնչում է կապիտալի լծի տակ գտնըվող միլիոնավոր կանանց, նրանց սրտերը լցնում երջանիկ կյանքի, խաղաղության համար պայքարելու հույսով և վճռականությամբ։ Անգլո-ամերիկյան բլոկի

նոր պատերազմի հրձիգները սարսափում են խաղաղության կողմնակիցների և նրա ամենախոշոր ջոկատը կազմող կանանց ուժից: Պատերազմի հրձիգների դեմ պայքարող, խաղաղությունը ակտիվորեն պաշտպանող կանանց թիվն արդեն անցել է 80 միլիոնից:

Ամերիկյան ժուռնալիստներից մեկը գրում է. «Ամենամեծ վտանգը կանայք են, նրանց ազդեցությունը ԱՄՆ-ում խիստ մեծ է, նրանք ոչ իրենց որդիներին են ուզում ուղարկել պատերազմելու, ոչ էլ իրենց ամուսիններին»:

Բազմաթիվ օրինակներ կարելի է բերել, թե ինչպես կապիտալիստական երկրներում կանայք հերոսաբար, իրենց կյանքի գնով պայքարում են խաղաղության պահպանման համար: Երիտասարդ ֆրանսուհի Ռայմոնդա Դիենը, պառկելով երկաթուղու ռելսերի վրա, թույլ չտվեց անցնելու զինամթերքով բարձված գնացքը, որի համար ֆրանսիական կառավարությունը նրան մեկ տարով բանտ նետեց: Նույն ֆրանսիական կառավարությունը բանտարկել է Ժաննա Պիկվալին, որը պայքարում էր պատերազմի պրոպագանդայի դեմ: Իտալիայի բազմաթիվ ազատասեր կանայք իրենց մեքենաներից կախել են պլակատներ՝ «Այս մեքենան երբեք չի



աշխատի պատերազմի համար» մակագրությամբ:

Կանանց միջազգային օրը՝ Մարտի 8-ը ամբողջ աշխարհի աշխատավոր կանանց ուժերի մարտական ստուգատեսի օրն է: Աշխարհի ազատասեր կանայք այդ օրը անց են կացնում խաղաղության և ազատության համար մղվող պայքարում նոր փորձ ձեռք բերած, այդ պայքարում է՛լ ավելի կոփված:

Սովետական երկրի կանայք այդ օրը նորից ու նորից մեծագույն բերկրանքով հանրագումարի են բերում կոմունիստական հասարակարգի կառուցման գործում հարազատ հայրենիքի ձեռք բերած պատմական հաղթանակները, հաղթանակներ, որոնք նվաճվել են իրենց անմիջական մասնակցությամբ: Սովետական կանայք, դեպի հարազատ Հայրենիքը բուռն սիրով լի, ոչ մի ջանք չեն խնայի նրա է՛լ ավելի հզորացման ու բարգավաճման համար, կոմունիզմի կառուցման համար, խաղաղության գործի հաղթանակի համար:

«Պարտիական կազմակերպությունները, պրոֆմիությունները, կոմերիտմիությունը և սովետական ու տնտեսական օրգանները պարտավոր են ուժեղացնել հոգատարությունը բանվորուհիների, կոլխոզնիկուհինե-

րի, ծառայող կանանց և բոլոր աշխատավոր կանանց աշխատանքի ու կենցաղի պայմանները բարելավելու նկատմամբ, մշտական օգնություն ցույց տալ մայր կնոջը՝ երեխաների դաստիարակության գործում, ապահովել կանանց տնային աշխատանքը թեթևացնելու կոչված մանկական և բուժական հիմնարկությունների, հասարակական ճաշարանների, կարի արհեստանոցների, լվացքատների ու կենցաղային սպասարկման այլ ձեռնարկությունների ցանցի ընդլայնումը և դրանց աշխատանքի բարելավումը»— ասված է կանանց միջազգային օրվա— մարտի 8-ի մասին ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշման մեջ։

Այս օրերին աշխատավորուհիների ամենալայն խավերին նորից ու նորից պատմելով այն ամենի մասին, թե ինչ են տվել մեր երկրի կնոջը բոլշևիկների պարտիան և սովետական իշխանությունը, ագիտատորները ավելի մոտիկից պետք է օգնեն նրանց՝ օգտվելու Ստալինյան Կոնստիտուցիայով կնոջը տրված իրավունքներից, ավելի խորը կերպով պարզաբանեն Լենինի—Ստալինի վեհ գաղափարները, օգնեն յուրաքանչյուր աշխատավորուհու՝ ավելի լավ աշխատելու ի փառս մեր մեծ Հայրենիքի։

ԱՐՇԱԼՈՒՅՍ ԲԱԲԱՅԱՆ





# ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆԸ ԿՀԱՂԹԻ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

Ամբողջ աշխարհը մեծագույն հետաքրքրությամբ ծանոթացավ «Պրավդա»-ի թղթակցի հետ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի ունեցած զրույցին։ Այդ զրույցը գտնվում է համաշխարհային հասարակայնության ուշադրության կենտրոնում։ Նրանում շոշափված են ներկայումս ամբողջ մարդկությանը հուզող հարցերը։ Ընկեր Ստալինի խոսքերը ջերմ արձագանք գտան բոլոր խաղաղասեր ժողովուրդների սրտերում։ Աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը մեծ առաջնորդի խոսքերից նոր ուժ է ստանում խաղաղության համար, ընդդեմ իմպերիալիստական ագրեսորների մղվող պայքարում։

Սովետական ժողովուրդն անշեղորեն և հետևողական կերպով պայքարում է խաղաղության համար։ Իր ստեղծման առաջին իսկ օրից Սովետական պետությունը միշտ էլ վարել է խաղաղասիրական քաղաքականություն, նա բոլոր միջոցներով պաշտպանել և պաշտպանում է խաղաղության գործը, ժողովուրդների միջև բարեկամություն հաստատելու գործը։ Սոցիալիստական Հայրենիքի գոյության ամբողջ ժամանակաշր-

շանում սովետական ժողովուրդն իր ուժերը նվիրել է խաղաղ ստեղծագործական աշխատանքին։ Հայրենական Մեծ պատերազմի հաղթական ավարտումից հետո, որի ընթացքում ժամանակավորապես ընդհատվել էր մեր երկրի խաղաղ շինարարությունը, բոլշևիկների պարտիան կազմակերպեց և գլխավորեց վստահորեն դեպի կոմունիզմ ընթացող սովետական ժողովրդի ստեղծագործական աշխատանքը։

Կոմունիստական շինարարության վեհ ծրագիրը հինգ տարի առաջ ուրվագծեց ընկեր Ստալինը՝ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում արտասանած իր պատմական ճառում։ Հետպատերազմյան հնգամյակի պլանի գերակատարումը սովետական ժողովրդին զգալիորեն մոտեցրեց կոմունիզմին։ Մեր ամբողջ ժողովրդի ջանքերով հաջողությամբ ավարտվեց գերմանական օկուպանտների կողմից քայքայված ժողովրդական տնտեսության վերականգնումը։ Այդ աշխատանքում ակտիվ մասնակցություն ունեցան Սովետական Բանակից զորացրված ռազմիկները։ Ինչպես հայտնի է, պատերազմից հետո Սովետական Միությունում զորացրումը կատարվեց երեք հերթով՝ երկու անգամ 1945 թվականին և մեկ անգամ՝ 1946 թվականին։ Բացի դրանից, 1946—1948 թվականների ընթացքում զորացրվեցին Սովետական Բանակի անձնակազմի ավագ հասակները։

Մեր երկրում տեղի է ունենում ստեղծագործական



աշխատանքի, պետական, կուլտուրական, տնտեսական շինարարության մի վիթխարի պրոցես։ Արդեն այժմ մեր երկրում հստակորեն երևում են կոմունիզմի գծերը։ Սովետական ժողովուրդը բոլոր հիմքերն ունի հավատով ու վստահությամբ նայելու ապագային։ Նա կարիք չունի պատերազմի, նա խորապես շահագրգռված է խաղաղության մեջ։ Պատերազմի ձգտում են միայն այն ուժերը, որոնք ապագա չունեն, որոնք ցանկանում են շտկել իրենց կեղտոտ գործերը նոր ագրեսիայով, որոնք ցանկանում են հարստություն դիզել նոր պատերազմում, ինչպես դիզում էին առաջ։ «Պատերազմը նրանց հարկավոր է գերշահույթներ ստանալու համար, ուրիշ երկրներին կողոպտելու համար։ Այդ միլիարդատերերն ու միլիոնատերերն են, որոնք պատերազմը դիտում են որպես վիթխարի շահույթներ տվող եկամտաբեր հոդված»—ասում է ընկեր Ստալինը։

Սովետների երկիրը կառուցում է վիթխարի էլեկտրակայաններ ու մեծ ջրանցքներ, նա չոր անապատները վեր է ածում արգավանդ դաշտերի, փոխում է գետերի դարավոր հունը, միլիոնավոր հեկտար տարածության վրա անտառներ է գցում։ Բոլոր այս կառուցումները լիովին համապատասխանում են ժողովրդական մասսաների բուն կենսական շահերին, նրանց ջերմ ձգտման դեպի խաղաղություն, դեպի ժողովուրդների անվտանգություն, դեպի ամբողջ մարդկության երջանկություն։

Սովետական կառավարության խաղաղության քաղաքականության ամենավառ վկայություններից են վերջերս ընդունված որոշումները՝ Կույբիշևի և Ստալինգրադի շրջանում, Թուրքմենիայում, Հարավային Ուկրաինայում և Ղրիմում կատարվող կառուցումների մասին։ Պարզ է, որ այս կառուցումները, որոնք իրավամբ կոմունիզմի կառուցումներ են կոչվում, պահանջում են տասնյակ միլիարդների բյուջետային ծախսեր։ Այդ ծախսերը կարող է կատարել միայն խաղաղասեր պետությունը, իր ռազմական ծախսերը սահմանափակող պետությունը։

Սոցիալիզմն աներևակայելի է առանց այն բանի, որ պետությունն ամենօրյա հոգատարություն ունենա ժողովրդի բարեկեցության նկատմամբ։ Դա սոցիալիստական հասարակության զարգացման օրենքն է։ Սովետական կառավարությունը հետևողական կերպով անց է կացնում լայն սպառման ապրանքների գները սիստեմատիկորեն իջեցնելու քաղաքականությունը։ Ամբողջ աշխարհին հայտնի է, որ Սովետական կառավարությունը հետպատերազմյան շրջանում երեք անգամ կատարել է գների իջեցում։ Պատերազմից հետո երկու տարի անց արդեն ՍՍՌՄ-ում վերացվեց քարտային սիստեմը և անցկացվեց գների առաջին իջեցումը, որից բնակչությունը զուտ շահում ունեցավ մոտ 86 միլիարդ ռուբլու չափով։ 1949 թվականի մարտին կատարվեց գների երկրորդ իջեցումը, որը բնակչությանը տվեց մոտ 71 միլիարդ ռուբլու շահում՝



մեկ տարվա ընթացքում։ Իսկ 1950 թվականի մարտին անցկացված գների՝ թվով երրորդ իջեցումից բնակչությունն ընդհանուր առմամբ շահեց մոտ 110 միլիարդ ռուբլի։

Լայն սպառման ապրանքների գների սիստեմատիկ իջեցման քաղաքականությունը, որ տասնյակ միլիարդների բյուջետային ծախսեր է պահանջում, կարող է կենսագործել միայն այն կառավարությունը, որը վարում է խաղաղության քաղաքականություն, որը բնակչությանը չի ծանրաբեռնում ռազմական ծախսերի համար պահանջվող հարկերով։

Այն ժամանակ, երբ Սովետական երկրում ամբողջ թափով ծավալվում է քաղաքացիական արդյունաբերությունը, դրված են կոմունիզմի մեծ կառուցումների հիմքերը, սիստեմատիկորեն անց է կացվում լայն սպառման ապրանքների գների իջեցում, ամերիկաանգլիական և մյուս իմպերիալիստները տենդագին կերպով պատրաստվում են պատերազմի, կրճատում են արտադրության խաղաղ ճյուղերը, կանգնեցնում են քաղաքացիական շինարարությունը, իրենց երկրների էկոնոմիկան փոխադրում են ռազմական ռելսերի վրա։

Ամերիկայի Միացյալ Նահանգների պետական բյուջեի ուղղակի և անուղղակի ծախսերի ավելի քան 70 տոկոսը կազմում են այն ծախսերը, որ կատարվում են նոր պատերազմի նախապատրաստման համար։ Չբավարարվելով դրանով, Տրումենը վերջերս կոնգրեսից պահանջեց, որ նա նոր տասնյակ միլիարդ դոլար-

ներ հատկացնի պատերազմական նպատակների համար, ԱՄՆ-ի բանակի թիվը հասցնելով մինչև 3,5—4 միլիոն մարդու։ Անգլիայի կառավարությունը պատերազմի պատրաստման ծախսերն ավելացրել է, անցյալ տարվա համեմատությամբ, 25 տոկոսով։ Ռազմական ծախսերի համար կատարվող հատկացումները Անգլիայում հասել են 4 միլիարդ 700 միլիոն ֆունտ ստերլինգի, Ֆրանսիայում՝ 750 միլիարդ ֆրանկի, ընդորում այդ գումարը շուտով կհասցվի 1000 միլիարդ ֆրանկի։ Ուսանելի է Դանիայի՝ այդ փոքրիկ երկրի օրինակը, որի կառավարող շրջաններն իրենց սանձը հանձնել են ամերիկյան մոնոպոլիաների ձեռքը։ Դանիայի կառավարությունը, Վաշինգտոնից համապատասխան հրահանգներ ստանալով, որոշել է սպառազինության համար լրացուցիչ կարգով ծախսել 430 միլիոն կրոն։ Ամեն տարի ռազմական ծախսերի հետ միասին դա կկազմի մեկ միլիարդ 130 միլիոն կրոն, իսկ Դանիայի 1950—1951 թվականների ամբողջ բյուջեն հաստատված է 2.600 միլիոն կրոնի գումարով։

Ի՞նչ են կառուցում այժմ ամերիկյան իմպերիալիստները, ինչի՞ վրա են ծախսում ժողովրդական միջոցները Անգլիայում, Ֆրանսիայում, Իտալիայում և մյուս մարշալականացված երկրներում։ Ղեկավարվելով հիտլերյան՝ «թնդանոթներ յուղի փոխարեն» լոզունգով, ամերիկյան իմպերիալիստները կառուցում են նոր ռազմական գործարաններ, ընդարձակում են եղածները, ամբողջ երկրագնդում ստեղծում են



ռազմա-ստրատեգիական բազաներ, ուժեղացնում են սպառազինության մրցավազքը։ Անգլիայում, Ֆրանսիայում, Իտալիայում և մարշալականացված մյուս երկրներում ժողովրդական միջոցները վատնվում են ամերիկյան ինքնաթիռներ և տանկեր գնելու համար։ Ինչպես ցույց է տալիս ԱՄՆ-ի, Անգլիայի և մյուս իմպերիալիստական պետությունների փորձը, «...Երկրի զինված ուժերի բազմապատկումը և սպառազինությունների մրցավազքը տանում են դեպի ռազմական արդյունաբերության ծավալումը, դեպի քաղաքացիական արդյունաբերության կրճատումը, դեպի քաղաքացիական մեծ կառուցումների կանգնեցումը, դեպի հարկերի բարձրացումը, դեպի մասսայական սպառման ապրանքների գների բարձրացումը» (Ստալին)։ Գների իջեցման մասին, այսինքն՝ աշխատավորների կենսամակարդակի բարձրացման մասին, այդ երկրներում խոսք անգամ լինել չի կարող։ Աշխատավորների դրությունը կապիտալիստական երկրներում անընդհատ վատթարանում է։ Այսպես, օրինակ, Հունաստանում բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը 1947 թվականին կազմում էր նախապատերազմյան մակարդակի միայն 71 տոկոսը, 1948 թվականին այն իջավ մինչև 62 տոկոսի, իսկ 1949 թվականին՝ 52 տոկոսի։ Ֆրանսիայում գների ինդեքսը երկու անգամ բարձր է աշխատավարձի ինդեքսից։ Իտալիայում սննդամթերքների գները 1938 թվականի համեմատությամբ աճել են 60 անգամ։ Անգլիայում

գները անընդհատ աճում են, և չնայած դրան, բանվորների աշխատավարձը «սառեցված է»։

Սրանք են փաստերը։ Եվ եթե անգլիական պրեմյեր Էտտլիի նման որոշ քաղաքական գործիչներ, չնայած բոլոր փաստերին և գիտական նկատառումներին, հնարավոր են համարում զրպարտել Սովետական Միությանը և նրա խաղաղ քաղաքականությունը, ապա այդ պետք է բացատրել միայն նրանով, որ Էտտլին և նրա նմանները փորձում են Սովետական Միությանը զրպարտելու միջոցով արդարացնել սպառազինությունների մրցավազքը իմպերիալիստական լագերի երկրներում։ «Պրեմյեր Էտտլիին կեղծիք է հարկավոր Սովետական Միության մասին,— ասում է ընկեր Ստալինը,— նրան հարկավոր է Սովետական Միության խաղաղ քաղաքականությունը պատկերել որպես ագրեսիվ, իսկ անգլիական կառավարության ագրեսիվ քաղաքականությունը որպես խաղաղ քաղաքականություն, մոլորության մեջ գցելու համար անգլիական ժողովրդին, նրա վզին փաթաթելու ՍՍՌՄ-ի մասին այդ կեղծիքը և, այդպիսով, խաբեության միջոցով նրան ներքաշելու նոր համաշխարհային պատերազմի մեջ, որը կազմակերպվում է Ամերիկայի Միացյալ Նահանգների կառավարող շրջանների կողմից»։

Ագրեսիայի նախապատրաստումից իմպերիալիստներն արդեն անցել են ուղղակի ագրեսիայի՝ Հեռավոր Արևելքում։ Գնալով ավելի ու ավելի ծավալելով



պատերազմը Ասիայի ժողովուրդների դեմ, փորձելով նոր համաշխարհային պատերազմի հորձանուտի մեջ նետել մարդկությանը, պատերազմի ամերիկյան հրձիգները կեղծավոր կերպով, փարիսեցիաբար հորջորջում են իրենց «խաղաղասիրության» մասին։ Բայց բավական է դնել այն հարցը, թե՞ ինչո՞ւ Տրումենը և նրա գործակիցները մերժեցին կորեացիների և չինացիների բազմիցս արած խաղաղ առաջարկները, որպեսզի Տրումենի կեղծավոր «խաղաղասիրությունից» հետք անգամ չմնա։ ԱՄՆ-ի, Անգլիայի և մյուս կապիտալիստական երկրների կառավարությունները կորեացիներին և չինացիներին մեղադրում են «ագրեսիայի» մեջ։ Բայց մի՞թե կորեացիներն ու չինացիներն են հարձակվել Ամերիկայի Միացյալ Նահանգների վրա։ Մի՞թե ԱՄՆ-ի զորքերը չեն, որ գտնվում են Կորեայի տերիտորիայում, կատարելով հրեշավոր գազանություններ, բռնություններ և կողոպուտներ։ Մի՞թե ԱՄՆ-ի զինված ուժերը չեն, որ օկուպացրել են չինական տերիտորիայի մի մասը՝ Տայվան կղզին։ Ո՞վ է այստեղ ագրեսորը, եթե ոչ ամերիկյան իմպերիալիստները— Տրումենն ու նրա բարեկամները։

Այն պատերազմը ,որը մղում են ամերիկյան իմպերիալիստներն ու նրանց դաշնակիցները Հեռավոր Արևելքում, անարդարացի, զավթողական պատերազմ է։ Այդ պատերազմը կարող է վերջանալ ինտերվենտների պարտությամբ միայն, որովհետև այն ոչ մի ժողովրդականություն չի վայելում ամերիկյան և անգլիա-

կան զինվորների մեջ։ Ընկեր Ստալինը նշում է, որ «Իսկապես, դժվար է զինվորներին համոզել, թե Չինաստանը, որը չի սպառնում ոչ Անգլիային, ոչ Ամերիկային և որից Տայվան կղզին զավթել են ամերիկացիները,— հանդիսանում է ագրեսոր, իսկ Ամերիկայի Միացյալ Նահանգները, որոնք զավթել են Տայվան կղզին և իրենց զորքերը մոտեցրել Չինաստանի բուն սահմաններին,— հանդիսանում են պաշտպանվող կողմ։ Դժվար է համոզել զինվորներին, որ Ամերիկայի Միացյալ Նահանգները իրավունք ունեն իրենց անվտանգությունը պաշտպանելու Կորեայի տերիտորիայում և Չինաստանի սահմանների մոտ, իսկ Չինաստանը և Կորեան իրավունք չունեն իրենց անվտանգությունը պաշտպանելու իրենց սեփական տերիտորիայում կամ իրենց պետության սահմանների մոտ։ Այստեղից էլ այն, որ պատերազմը ժողովրդականություն չի վայելում անգլո-ամերիկյան զինվորների մեջ»։

Իմպերիալիստներն ամեն կերպ փորձում են բորբոքել նոր համաշխարհային պատերազմի հրդեհը, որովհետև «պատերազմը ամենաեկամտաբեր հոդվածն է իմպերիալիստների համար» (Ստալին)։ «Պրավդա»-ի թղթակցի հետ ունեցած իր զրույցի մեջ ընկեր Ստալինը նշեց խաղաղությունն ամրապնդելու և պահպանելու միակ ճիշտ ուղին։ «Խաղաղությունը կպահպանվի և կամրապնդվի, եթե ժողովուրդները խաղաղության պահպանման գործը վերցնեն իրենց ձեռքը և



այն պաշտպանեն մինչև վերջ։ Պատերազմը կարող է դառնալ անխուսափելի, եթե պատերազմի հրձիգներին հաջողվի կեղծիքով մոլորեցնել ժողովրդական մասսաներին, նրանց խաբել և նրանց ներգրավել համաշխարհային նոր պատերազմի մեջ»։

Ուստի խաղաղության պահպանման համար լայն կամպանիան, որպես պատերազմի հրձիգների հանցավոր մեքենայությունների մերկացման միջոց, այժմ առաջնակարգ նշանակություն ունի»։

Ընկեր Ստալինն իր զրույցում նշեց, որ խաղաղության բախտը կախված է ժողովրդական մասսաների հաստատակամությունից՝ պատերազմի հրձիգների դեմ մղվող պայքարում, կախված է խաղաղության կողմնակիցների համաշխարհային շարժման ակտիվությունից ու թափից։ Պատերազմի իմպերիալիստական հրձիգների դեմ կանգնած է խաղաղության հզոր լագերը։ Սովետական ժողովուրդը հպարտ է այն բանով, որ այդ լագերի գլուխ է կանգնած մեր Հայրենիքը՝ խաղաղության պատվարն ամբողջ աշխարհում։ Խաղաղության կողմնակիցները անցյալ տարի զգալի հաջողություններ ձեռք բերին, նրանք շահեցին մի շարք լուրջ ճակատամարտեր պատերազմի հրձիգների դեմ մղվող պայքարում։ Խաղաղության կողմնակիցների շարժմանը շարունակ միանում են նորանոր ուժեր։ 1950 թվականի նոյեմբերին Վարշավայում տեղի ունեցած խաղաղասեր ժողովուրդների համաշխարհային կոնգրեսը նշեց խաղաղության պաշտպանության

շարժման պարզորոշ հեռանկարներն ու նպատակները։ Խնդիրը ներկայումս այն է, որ կենսագործվեն խաղաղասեր ժողովուրդների որոշումները, է՛լ ավելի ակտիվացվի պրոգրեսիվ մարդկության պայքարը, հասնելով այն բանին, որ լիակատար չափով մերկացվեն և ջախջախվեն անգլո-ամերիկյան ագրեսորների բոլոր նենգ դավերը։

Վ. ԻՍՐԱՅԵԼՅԱՆ
(Պատմական գիտությունների թեկնածու)



## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

ԼԵՆԻՆ.— Երկեր, 21-րդ հատոր։ 630 էջ, գինը 8 ռ.։

Վ. Վ. ՄԱՅԱԿՈՎՍԿԻ.— Ընտիր երկեր, 2-րդ հատոր։ 508 էջ, գինը 18 ռ. 30 կոպ.։

ԱԼԵՔՍԱՆԴՐ ԲԵԿ.— Պանֆիլովականները առաջին բնագծում։ 308 էջ, գինը 6 ռ. 75 կոպ.։

Է. Է. ՍԱՎԶԴԱՐԳ. Ա. ՅԱ. ՏՐՈՖԻՄՈՎԻՉ.— Պայքար գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների և հիվանդությունների դեմ։ 89 էջ, գինը 1 ռ. 70 կոպ.։

Ա. Ն. ՏՐՈՒՅԿԻ. Ա. Ֆ. ՊՐՈՆԻՆ.— Ցանք և ցանքի մեքենաները։ 53 էջ, գինը 1 ռ.։

Կանոններ կովերի լիակթման։ 43 էջ, գինը 65 կոպ.։



Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении

**БЛОКНОТ АГИТАТОРА**

№ 4 1951 г.

*ՎՖ 00463 Պատվեր № 187 Տիրաժ 9550*

*Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան,*
*Երևան*